# ՌՈՍՏՈՄ

## Գ.

Ժընեւ, սակայն, չէր գոհացնում Ռոստոմին։ Նա կենդանի գործի մարդ էր եւ «Դրօշակ»ի հրատարակութիւնն ու դասախօսութիւնները նրան բաւարարութիւն չէին տալիս։ Նրա սրտովը չէր եւ Ժընեւի հայկական միջավայրը՝ ուսանողական մանր – մունր հաշիւներով, նախանձով եւ ինտրիգներով։ «Ես խեղդւում եմ այստեղ, օդ չկայ», գրում էր նա իր նամակներից մէկում։ Եւ հէնց որ հնարաւոր եղաւ, «Դրօշակ»ը յանձնեց Յովնան Դաւթեանին եւ ինքը, պարսկական անցագրով, մեկնեց Թիֆլիս, ուր 1895ի ամառը մասնակցեց կուսակցական մի կարեւոր խորհրդակցութեան եւ ապա անցաւ Կարին կազմակերպական նպատակներով։

Քիչ յետոյ, Հայկական Նահանգները հասաւ հռչակաւոր Շաքիր փաշան։ Ռոստոմը «Դրօշակ»ում (1895 Թ. Նոյեմբեր) նկարագրում է այդ հրէշի գալուստը եւ հայ ժողովուրդի ցուցադրած թշնամական վերաբերումը։ Շաքիր փաշայի գալուց յետոյ տեղի ունեցաւ Կարնոյ կոտորածը. Ռոստոմը 500 աշակերտների եւ սուսուցիչների հետ կոտորածի ժամերը անց է կացնում դպրոցում։ «Դրօշակ»ի 1895 Թ. Դեկտ. 15 համարում նա նկարագրել է այդ դէպքերը։

Կոտորածից յետոյ, Թուրք կառավարութիւնը ուզում է ձերբակալել Ռոստոմին, բայց պարսից հիւպատոսի միջամտութեամբ, մի ղաւազի եւ Թուրք ոստիկանների ուղեկցութեամբ, հեռացւում է Պարսկաստան։ Գալիս է Մակու, Ս. Բարթուղեմէոսի վանքը, ապա Սալմաստ ու Թաւրիզ՝ բոլոր վայրերում մասնակցելով կազմակերպական գործերին ու խորհրդակցութիւններին, որոնց մէջ քննւում էին Երկրի գործունէութեան վերաբերող հարցեր։ Պարսկաստանից «Դրօշակ»ին ուղարկում է հետաքրքրական թղթակցութիւններ քրտական շարժումների եւ Թիւրք–պարսկական սահմանագլխի գործերի մասին։

Պարսկաստանից Ռոստոմը վերադարձաւ Կովկաս եւ նետուեց կուսակցական – կազմակերպական աշխատանքների մէջ։ Նորից եղաւ Թաւրիզում զէնքի արհեստանոցի գործերով։

1898 Թ. Ապրիլին Թիֆլիսում գումարուեց Հ. Յ. Դաշնակցութեան երկրորդ ընդհանուր ժողովը, որը հիմնական քննութեան ենթարկեց նախկին տարիների յեղափոխական գործունէութիւնը, կազմակերպական ձեւը եւ ապագայ գործունէութեան եղանակը։ Յատկապէս լուրջ քննութեան առարկայ եղան Բանկ Օթոմանի գրաւման եւ Խանասորի արշաւանքի արդիւնքները։ Այդ երկու գործերի ղեկավարներն էլ ներկայ էին ժողովում։

Այստեղ դրուեց եւ Թուրքիայի ուրիշ յեղափոխական տարրերի եւ, մասնաւորապէս, մակեդոնացիների հետ համերաշխելու խնդիրը, որի ամենաջերմ պաշտպաններից էր Ռոստոմը։ Առհասարակ նա խոշոր նշանակութիւն էր տալիս օտար տարրերի հետ գործակցելու գաղափարին եւ համակրանքով էր արտայայտում Թիւրք եւ քիւրտ ժողովուրդների արթնացման ու յեղափոխականացման մասին։

Երկրորդ ընդհանուր ժողովը որոշեց «ջանալ կապեր հաստատել Մակեդոնացիներու, Յոյներու եւ ուրիշներու» հետ, եւ Ռոստոմը ոգեւորութեամբ փարեց այդ ծրագրի իրագործման։

1898 Թ. Սեպտեմբերին Ռոստոմը ամուսնացաւ Օր. Լիզայի հետ։ Օրիորդ Լիզայի ծնողները հակառակ էին այդ ամուսնութեան, այդ պատճառով հարսանիքը տեղի ունեցաւ Յ. Քաջազնունու տանը։ Պսակից յետոյ, անմիջապէս, նոյն գիշերն իսկ, ոստիկանութեան հետապնդումից ազատուելու համար, անցաւ արտասահման։ Ժընեւում նա խորհրդակցութիւններ ունեցաւ ընկերների հետ։ Այնտեղ էին Քրիստափորը, Զաւարեանը, Արմէն Գարոն, Յովնանը եւ ուրիշներ։

1900ին Պուլկարիա անցաւ Տիկին Լիզան՝ դպրոց հիմնելու ծրագրով։ Շուտով հոն հասաւ եւ Ռոստոմը՝ նպատակ ունենալով գլուխ բերել հայ – մակեդոնական գործակցութիւն։ Տիկին Լիզա Ֆիլիպէում հիմնեց մի մասնաւոր մանկապարտէզ, որը 1901ից վերածուեց դպրոցի։ Մի ամբողջ տարի Ռոստոմը դասաւանդեց այդ դպրոցում՝ ստեղծելով տաք մթնոլորտ իր շուրջը։ Նրան յաջողուեց իրականացնել եւ հայ – մակեդոնական համերաշխութեան ծրագիրը։ 1902ին Ռոստոմը ընտանիքով վերադարձաւ Կովկաս եւ 1903ին քարտուղարի պաշտօն էր վարում Թիֆլիսի Գիւղատ. Ընկերութեան մէջ։ Նոյն տարուայ վերջը ձերբակալուեց եւ աքսորուեց Օտէսա, որտեղից փախաւ արտասահման։

1904 Թուին Սոֆիայում տեղի ունեցաւ Հ. Յ. Դ. 3րդ ընդհ. ժողովը, որի օրակարգի մէջ կային մի շարք ծանրակշիռ հարցեր — Կիլիկիայի եւ Սասնոյ շարժումներ, մարտական խմբերի արշաւանքներ դէպի Երկիր, ցուցական գործունէութիւն, սուլթանի մահափորձ եւայլն։ Ռոստոմը դէմ էր սուլթանի մահափորձի ձեռնարկին եւ, առհասարակ, ցուցական գործունէութեան, դէմ էր եւ Քրիստափորի մասնակցութեան։ Քրիստափոր ինքն էլ թերեւս սրտով չէր գնում այդ գործին, բայց հոգեբանական պայմանները անհրաժեշտ էին դարձնում նրա անմիջական ղեկավարութիւնը։

Ընդհանուր ժողովում բազմակողմանի քննութեան առարկայ եղան եւ կովկասահայոց գործերը։ Եկեղեցական գոյքերի պաշտպանութեան յաջորդող փոթորկայոյզ շրջանն էր։ Դաշնակցութիւնն էր վարիչը ինքնապաշտպանութեան պայքարի, թէեւ հրապարակի վրայ երեւում էր մի անկուսակցական մարմին։ Ամէն կողմից պահանջում էին, որ Դաշնակցութիւնը պաշտօնապէս իր ձեռքը առնէ շարժման ղեկավարութիւնը։ Ընդհանուր ժողովը ընդառաջ գնաց այդ տրամադրութեան։ Ընդունուած բանաձեւում ասւում էր. «Դաշնակցութիւնը իր վրայ առնելով կովկասահայ տարրի ինքնապաշտպանութեան գործը որոշեց յանձնել այդ՝ Կովկասի պատասխանատու մարմնին, որ՝ պահելով իր «ինքնապաշտպանութեան Կեդրոնական Կոմիտէ» անունը՝ պիտի շարունակէ գործել «Դաշնակցութիւն» պաշտօնական անուան տակ»։

Ս. ՎՐԱՑԵԱՆ

---

ՕՐՈՒԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՀԵՏ

# Շղթայակապ Ռումանիան

Ռումանացի պրոֆ. Հ. Սասկուլէսկու, որ Փարիզ ապաստանած էր, վերջերս գրութիւն մը հրատարակեց իր երկրին կացութեան մասին։ Կ'ամփոփեմ հիմնական մասերը, այնքան եղերական դէպքերով։

Նախապատմական շրջաններէն ի վեր, Ռումանիա միշտ ալ ենթարկուած է զանազան արշաւանքներու։ Կարպաթեան լեռներու եւ Դանուբի միջեւ փռուած հողամասին մէջ բնակող ժողովուրդը միշտ խոյս կուտար, որովհետեւ նորեր կ'արշաւէին երկիրը։

Սկիւթացիները որոնք հոն կը բնակէին պարսիկ Դարեհ Թագաւորին շրջանին, երկիրը ձգեցին Թրակիացիներու։ Հռոմի երկու դարու իշխանութեան ատեն խիստ պայքար կը մղէին զինուորները, հեռու պահելու համար արշաւող բարբարոսները։ Գ.էն ԺԴ. դարերու միջոցին Ռումանիոյ պատմութիւնը պայքարի պատմութիւնն է բարբարոսներու արշաւանքի եւ բնիկ ժողովուրդին միջեւ։ Բնիկ ժողովուրդը խառնուրդ մըն էր Սլաւներու եւ Ռումաններու, որոնք խոյս կուտային Գոթացիներու, Հոներու, Ավարներու առջեւէն եւ կը պահուէին Կարպաթեան լեռներու մէջ։ Պուլկարները, Թաթարները, Մաճարները եւ Թուրքերը երկար ատեն իշխեցին այս երկրին մէջ։ ԺԷ. դարուն Թաթարները եւ Խազախները յարձակեցան Ռումանիոյ վրայ։ ԺԸ. եւ ԺԹ. դարերուն Ռուսերը եւ Աւստրիացիները գրաւեցին երկիրը։

Տեւական արշաւանքի այս հոսանքը փախուստի հոգեբանութիւն մը ստեղծեց Ռումանացի ժողովուրդին մէջ։ Անոնք կը նախընտրէին աքսորը բռնութենէն։ Մինչեւ իսկ գիւղացիներու մեծ խումբեր թողուցին երկիրը, ազատութիւն գտնելու համար ուրիշ երկիրներու մէջ։ Անոնք կ'երթային Ուկրայնեան հողամասին վրայ, ուր այսօր Սովետները կազմած են իրենց Մոլտաւեան խորհրդային հանրապետութիւնը։

Այսպէս անոնք դարձան սկեպտիկ եւ անկայուն։ Գիւղացին իր բնակարանը կաւէ եւ ճիւղերէ կը շինէ եւ մէկ շաբաթէն կը վերջացնէ, վախնալով որ կը թողու տուն – տեղ։

Երբ 1940ին Ռուսերը գրաւեցին Հիւսիսային Ռումանիան՝ Պուքովինան, խիստ հսկողութեան ենթարկեցին սահմանագլուխները, պահելով մարզուած շուներ։ Սովետական սահմանագլուխին երկայնքին սաուրեկրեայ ելեկտրական թելեր դրուեցան որոնք ահազանգի ազդանշանը կուտային, եթէ մէկը վրայէն անցնէր։ Սակայն 1944էն 1947 սահմանագլուխները բաց էին։ Մեծ առեւտուր կար Պուքրէշի, Փէշթայի, Փրակայի, Պելկրատի եւ Վիէննայի միջեւ, կարծես թէ սովետական քաղաքականութիւնը կը քաջալերէր ճամբորդելու ազատութիւնը արբանեակ երկիրներուն միջեւ։

1945ին էր որ Ռումէն գաղթականներ առաջին անգամ ձգեցին երկիրը։ Ասոնք Հրեաներ էին որ Սիոնական կազմակերպութեան կը պատկանէին, եւ Իտալիոյ վրայով Պաղեստին կ'երթային։ Հետզհետէ երիտասարդ բանուորներ սկսան հեռանալ երկրէն։ Բանուորներու, դրասենեակի պաշտօնեաներու վիճակը եղերական էր 1945էն 1947։ 1947ին բանուոր մը 4 միլիոն լէյէն պակաս կը շահէր ամսական երբ մէկ քիլօ կարագը կ'արժէր մէկ միլիոն լէյ, մէկ քիլօ ցորենը կամ ալիւրը 300 հազար լէյ, զոյգ մը կօշիկը վեց միլիոն, մէկ միջակ ճաշը ճաշարանի մը մէջ 500 հազարէն մէկ միլիոն։

1947ի ամառը ամէնէն մեծ մաքրագործումը սկսաւ պետական պաշտօնեաներու մէջ։ 50 հազար հոգի արձակեցին, շատերը 20 — 30 տարուան ծառայութենէ վերջ։ Աշխատանքի ընդհ. Դաշնակցութիւնը թոյլ կուտար առեւտրական եւ ճարտարարուեստական ձեռնարկներուն՝ արձակել այն բանուորները եւ պաշտօնեաները որոնք քաղաքականօրէն վստահելի չէին։ Միեւնոյն ատեն Համայնավար կուսակցութիւնը կը կազմակերպէր իր տնտեսական հսկողութեան մեքենան, ծանր տուրքեր դնելով գործարանատէրներու եւ վաճառականներու վրայ։ Շատերը ճարահատ ամէն բան ձգելով կը փախչէին դէպի Արեւմուտք։ Սիոնականները, մաքրագործուած բանուորները, պետական պաշտօնեաները դրասենեակի աշխատաւորները, եւ ազատ ասպարէզի հետեւողները որոնց մէջ կային շատ մը խմբագիրներ եւ իրաւաբաններ, լեցուեցան Արատի, Օրատիայի, Վալէայի պանդոկները, սպասելով որ ուղեցոյցներ Վիէննա առաջնորդեցին զիրենք։

1946էն 1947 շուրջ հարիւր հազար Ռումանացիներ մեկնեցան դէպի Արեւմուտք, մեծ մասը Հրեաներ։ Իշխանութիւնները գիտէին եւ նոյնիսկ կը քաջալերէին։ Ռուս սպաներ կ'առաջնորդէին զանոնք Վիէննա։ Երբեմն ռումանացի ոստիկան մը կը ձերբակալէր, սակայն քանի մը օր վերջ ազատ կ'արձակէր եւ անոնք կրնային իրենց ուզած տեղը երթալ։ Գիշերանց կ'անցնէին սահմանագլուխը։ Շատ անգամ աւազակախումբեր կը յարձակէին եւ կը կողոպտէին զանոնք։ Շատ մը ոճիրներ գործուեցան անպատիժ։

Արտագաղթի այս հոսանքը տեւեց մինչեւ 1947 Նոյեմբեր, երբ Տիկին Աննա Փաուքըր արտաքին գործերու նախարար եղաւ։ Իր առաջին գործերէն մէկը եղաւ փակել սահմանագլուխները, կրկնապատկելով սահմանապահ զօրքին թիւը։ Խստիւ պատուիրեց սպաննել ով որ կը համարձակէր անցնիլ սահմանագլուխը։ Այն սահմանապահ զինուորը որ փախստական մը կը բռնէր, մէկ ամիս արձակուրդ եւ 5000 լէյ պարգեւ կը ստանար, ինչպէս եւ բաժին մը փախստականին վրայ բռնուած դրամէն կամ գոհարեղէններէն։

1948ի գարնան սահմանագլուխներուն վրայ սպաննուած փախստականներու դիակները օրերով կը ցուցադրուէին գիւղերու փողոցներուն մէջ։ Նոր օրէնք մը հինգ տարի բանտարկութեան կը դատապարտէր անոնք որ սահմանամերձ գիւղերը կ'երթային ներքին գաւառներէն, առանց արտօնութեան։ Շատ չանցած բանտերը լեցուեցան։

Գիւղացիներուն արգիլուած էր. բարձրացող բոյսեր ցանել, ինչպէս ցորեն, եգիպտացորեն, կանեփ, վարսակ, արեւածաղիկ եւայլն։ Աշտարակներ դրուեցան սահմանագլուխներուն վրայ, եւ՝ զինուորները շարունակ կը հսկէին հեռադիտակով։ Շաբաթը անգամ մը կը հերկէին սահմանագլուխը Դանուբէն մինչեւ Կարպաթեան լեռները, ոտքի հետքերէն երեւան հանելու համար թէ արդեօք մէկը անցա՞ծ էր։ Համայնավար կուսակցութիւնը կ'ուզէր արտագաղթը արգիլել որեւէ գնով։ Կը պատմէին թէ սահմանագլուխներուն հսկողութեան համար 5000 ոստիկան շուներ բերուած էին Խ. Միութենէն։ Քարոզչութեան ուրիշ մէկ ձեւն ալ այն է թէ Արեւմուտքը սովի մատնուած է։ Թերթերը անօթութեան պատմութիւններ կը հրատարակէին Իտալիոյ, Ֆրանսայի եւ Գերմանիոյ մասին, անթելն ալ կը կրկնէր։ 1948ի ամրան ոչ ոք համարձակեցաւ փախչիլ։ Շատեր յանդուգն հնարքներ կը յղանային, փախչելու համար։ Մեծ գումարներ կը խոստացուէին օդաչուներու։ Ռուս բարձրաստիճան սպաներ մինչեւ մէկ երկու միլիոն լէյ (3000 — 6000 տոլար) կը ստանային, դիւրացնելու համար հարուստներու փախուստը մինչեւ Վիէննա։

Ոստիկանութիւնը խաղ մը սարքեց, խոստանալով ընտանիք մը Վիէննա հասցնել, հազար տոլարի։ Պուքրէշէն տասնըհինգ հարուստներ վճարեցին այդ գումարը։ Իրենց ընտանիքները կեղծ հեռագիրներ ստացան թէ Վիէննա հասած են։ Երեք ամիս վերջը հաստատուեցաւ թէ բանտարկուած են եւ դատավարութեան կը սպասեն։

Ուսուցչապետը այս առթիւ կը պատմէ թէ ինք տասը ամիսէն աւելի աշխատեցաւ, Ռումանիայէն հեռանալու համար, մինչեւ որ կրցաւ սահմանը անցնիլ իր կնոջ հետ եւ Փարիզ գալ Հունգարիոյ ճամբով։

Անկէ ի վեր շատ աւելի ծանրացած է կացութիւնը։ Ռումանացի մը չի կրնար մէկ տեղէն միւսը երթալ առանց արտօնութեան։ 150 հազար հոգի ջրանցքներ կը փորեն, ուրիշներ ճամբաներ կը շինեն։ Հունգար եւ ռումանական սահմանագլուխը փակուած է։ Հունգարները որոնք 1948ին թոյլ կուտային օտարներուն որ անցնին երկրէն՝ մէկ սահմանագլուխէն միւսը, հիմա ռուսական դրութեան կը հետեւին։ Այն Ռումանացին որ կ'ուզէ խոյս տալ երկրէ, պարտաւոր է աչք առնել շատ մեծ վտանգներ։

Թ. Ա. Թ.



ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMÉNIEN EN EUROPE

HARATCH · Fondé en 1925 · R. C. S. 376.286

Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN

17, Rue Damesme — PARIS (13)

Վեցամս . 800 փր ., Տար . 1600, արտ . 2500 փր .

Tél. GOB. 15-70 Գին 7 փր . C.C.P.Paris 1678-63

Samedi 14 Janvier 1950 Շաբաթ 14 ՅՈՒՆՈՒԱՐ

26րդ ՏԱՐԻ — 26e Année No. 6051 – Նոր շրջանի թիւ 1462

Խմբագիր՝ Շ . ՄԻՍԱՔԵԱՆ

ՄԵՐ ԽՕՍՔԸ

# ՆԱՀԱՆՋԸ ՏՈՒՆԷՆ ԿԸ ՍԿՍԻ

Ամէն օր նամակ մը մեր ընթերցողներէն, անհատական կամ հաւաքական ստորագրութեամբ.— Ի՞նչ ընենք որ մեր զաւակները չօտարանան : Զկորսուին հայութեան համար :

Սիրով տեղ կուտանք ամէնուն ալ, առանց սեռի, դասակարգի կամ դաւանանքի խտրութեան :

Եթէ գործնական ելք մըն ալ գտած չըլլա՛ն, գոնէ մտածել կուտան : Ինչպէս ամերիկահայ գաղութին մէջ, ուր շատեր նոր կը սթափին :

Կը խոստովանինք թէ հրաշագործ միջոցներ չկան, ամբողջովին փրկելու համար նոր սերունդը, ի սփիւռս աշխարհի :

Արդէն զաւակներու — նոյնիսկ թոռներու — տէր եղած են անոնք որ քիչ - շատ «հայկականութիւն» բերած էին իրենց հետ, երբ հոս եկան :

Մեծ մասով որբանոց կամ դպրոց տեսած էին անոնք : Ապրուստի անմիջական հոգերէն վերջ, շատերը յաջողեցան մշակել իրենց գիտելիքները եւ նոր պաշար ամբարել, խառնուելով հանրային կեանքի ելեւէջներուն :

Ինչ որ նոր սերունդ կը կոչենք այսօր, ջախջախիչ մեծամասնութեամբ կը բաղկանայ օտարութեան մէջ ծնած կամ հասակ նետած մանուկներէ, պատանիներէ եւ երիտասարդներէ :

Ուրեմն, չորս - հինգ, եթէ ոչ տասն անգամ աւելի դժուարացած է փրկութեան գործը : Մասնաւորապէս արեւմտեան Եւրոպայի եւ Ամերիկայի մէջ :

Ամէնքդ ալ ունիք զաւակներ եւ թոռներ : Ունիք ազգականներ եւ բարեկամներ, բազմաթիւ զաւակներով :

Մանկապարտէզի սանիկներէն մինչեւ թաղային դպրոցներու աշակերտները կը վժվժան ձեր բոլորտիքը : Փորձեցէք հարցումներ ուղղել իրենց, կամ հայրիկին ու մայրիկին,— Հայերէն գիտե՞ն :

Պիտի ստանաք նոյն կաղապարեալ պատասխանները, միօրինակ եւ կսկծալի .

— Կը հասկնան, բայց չեն կրնար խօսիլ :— Կը խօսին, բայց չեն կրնար գրել - կարդալ : — Ոչ կը հասկնան, ոչ ալ կը խօսին ...

Եթէ ուզէք աւելի խորացնել հարցումը, պիտի տեսնէք որ շատ մը հայրիկներ ու մայրիկներ գոհ են այս վիճակէն : Իրենք են որ կը քաջալերեն օտարացումը, Ֆրանսերէն խօսելով պզտիկներուն հետ :

Այո, մինչ հասարակ բանուորը գլուխը քարէն կը զարնէ, որպէսզի զաւակները հայերէն սորվին, աւելի բախտաւորներ յօժարակամ անձնատուր եղած են հոսանքին : Կ՚ողջունե՛ն ձուլումը, տունով - տեղով :

Վա՛յ փրկութեան գործին, երբ նահանջը տունէն կը սկսի : Երբ հայրիկն ու մայրիկը աւելորդ բեռ կը սեպեն մայրենի լեզուն :

« Հայր հայ պահել» : Այսպէ՛ս ջուրի՞ն տալով մայրենիքը ...

Տակաւին թարմ է մեր գաղութը :

Մ . Նահանգներուն մէջ, «մեծ հայրիկը մեռաւ, դադրեցուցէք թերթին առաքումը», կ՚ըսեն եղեր : Հեռաձայնով կամ նամակով :

Մեր մէջ ալ յաճախադէպ են նոյնիմաստ նամակներ, երբ հայրիկը մեռած կ՚ըլլայ (դեռ կանուխ է մեծ հայրիկին հասնելու համար) :

Միջավայրին դժուարութեանց եւ փորձութեանց մասին խօսած ատեն, կը մոռնանք որ ուրիշ բազմաթիւ ժողովուրդներ ալ կը գտնուին մեր կացութեան մէջ :

Անոնք օրը իրիկուն չեն ըներ ձիւթ ծամելով : Ինքնապաշտպանութեան միջոցներ կը խորհին շարունակ :

Ինչպէս ժողովուրդները, զաւակներն ալ աղօթքով չեն փրկուիր, այլ աշխատանքով : Ճակատ յարդարելով սպառնացող վտանգին դէմ :

Պայքարիլ՝ փրկելու համար կարելին : Սկսելով տունէն : Օգտուելով բոլոր պատեհութիւններէն :

Ոչ միայն հաւաքական, այլեւ անձնական, ընտանեկան շահն ալ այս կը պահանջէ բոլորէս :

Ո՞վ բարիք տեսաւ օտարախօս, այլասերած զաւակներէ :

Որո՞ւ համար գաղտնիք է որ հետզհետէ աւելի ահաւոր համեմատութիւններ պիտի ստանայ բուն չարիքը :

Շ .

# ՕՐԸ ՕՐԻՆ

## ԹՐՔԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

Մեր կիներուն կը վերագրուի խաղամոլութիւն եւ թրքախօսութիւն :

Դատախազ ընկերուհիներէն մէկը ըսեր է, Պէյրութի մէջ.— «Մեր կիներուն մեծ մասը դեռ թրքախօս է, հայերէն գիտնալով հանդերձ թուրքերէն կը խօսի» :

Առաջինը բարեկեցիկ մարդոց յատուկ մոլութիւն մըն է : Հանդիպա՞ծ էք օրուան հոգերով ծանրաբեռնուած կնոջ մը որ թղթախաղի սեղանին առջեւ նստած ըլլայ : Այնքան բացառիկ մոլութիւն մըն է այս որ, չարժեր ընդհանրացնել եւ իբրեւ արատ քսել հայ կնոջ ճակտին :

Նոյնիսկ եթէ հոն, Լիբանանի կամ Սուրիոյ մէջ կիներ ընդհանրացուցած են որեւէ բախտախաղ, իրենց մեղքը պէտք է իրենք քաւեն եւ ոչ թէ բեռցնեն ընդհանրապէս բոլորին կռնակին :

Գալով թրքախօսութեան, արդարեւ աններելի մեղք մըն է, մանաւանդ 30 տարի ազատ երկիրներու մէջ մեր մայրենի լեզուն մշակելէ վերջ : Ինչ որ գրենք ու ըսենք այդ մասին քիչ է : Թուրքը իր քաղաքակրթութեամբ շատ վար կը մնայ մեր ժողովուրդէն, թէեւ ունի երկիր եւ պետութիւն :

Որո՞ւնն է յանցանքը, եթէ տակաւին կը գործածուի մեր դահիճներուն լեզուն՝ մեր ընտանիքներէն ներս :

Թուրքը կը խնդայ մեր խօսած թուրքերէնը լսելով : Ամէնէն քաղաքավարը «իշամեղուն կճէ լեզուդ ...» , կ՚ըսէ քմծիծաղով մը, բան մըն ալ աւելցնելով իր արհամարհանքին վրայ :

Իսկ մենք հաւատարմօրէն, յամառութեամբ եւ սովորամոլութեամբ ամէն տեղ, մինչեւ հեռաւոր Ամերիկաները կը պտտցնենք զայն, ջուրին տալով մեր սքանչելի հայերէնը, մեր ազգային արժանապատուութեան հետ :

Այս ընդվզեցուցիչ պարագան ընդունելով հանդերձ, չափազանցութիւն է ըսել թէ «մեր կիներուն մեծ մասը դեռ թրքախօս է» : (Լիբանանի եւ Սուրիոյ մէջ) :

Դժբախտաբար շատ մը թրքախօսներ կան Կիլիկեցիներու հին սերունդին մէջ — այր թէ կին — ինչպէս կան խաղամոլներ : Բայց արդար չէ բոլորը մէկ ջուրով լուալ : Մանաւանդ որ, երկու սերունդ հասած է վերջին արտագաղթէն ի վեր :

Այս ճշդումէն վերջն ալ, համաձայն եմ որ միացեալ ճակատ մը կազմուի ամէն տեղ, թրքախօսութեան դէմ :

ՍՕՍԻ

## ԱՐԱՔՍԻ ՋՈՒՐԸ ԵՒ ԹՈՒՐՔԻՈՅ ՊԱՐՏՔԸ

Թուրքիոյ ազգ . ժողովի յունուար 6ի նիստին մէջ, արտաքին նախարարը հետեւեալ յայտարարութիւնն ըրաւ, ի պատասխան Կարսի երեսփոխան Հիւսամէտտինի հարցումներուն .

— «1927ին Սարտարապատ ամբարտակին (պառաժ) կառուցման ձեռնարկուեցաւ Արաքս գետին վրայ, Իգտիր գաւառակին մէջ : Համաձայն Թուրք եւ խորհրդային կառավարութեանց միջեւ ստորագրուած պայմանագրութեանց, այս ամբարտակին շինութեան եւ նորոգութեան ծախքերուն կէսը Թուրք կառավարութիւնը պիտի վճարէ եւ ոռոգումէն երկու կողմն ալ պիտի օգտուի : 1937ին Սովիէթական Ռուսիա հաղորդեց որ այս ամբարտակին շինութեան եւ նորոգութեան համար Թուրքիոյ ինկած բաժինը մէկ միլիոն ռուբլի է : Այդ թուականին այս դրամը չվճարուեցաւ : Մինչ այդ, պատերազմը վրայ հասաւ, խորհուեցաւ այս պարտքը թրքական դրամով կամ ապրանքով հատուցանել : Մեր բանակցութիւնները ապարդիւն մնացած ըլլալով, մեր բաժինը չվճարուեցաւ :

Վերջերս, երբ խորհրդային կառավարութեան հաղորդուեցաւ մեր պարտքին քանակութիւնը, Սովիէթները պատասխանեցին թէ մէկ ռուբլիէն քիչ մը աւելին մէկ տոլարի կը համապատասխանէ եւ ըստ այնմ պէտք է վճարուի : Կառավարութիւնը տարապայման բարձր գտաւ այս դրամը եւ չվճարեց :

Ոչ մէկ կասկած թէ նախ յարգելու ենք մեր յանձնառութիւնը : Յետոյ կանխաւ կարելի չէ պնդել թէ դիմացի կողմը դժուարութիւն պիտի յարուցանէ : Երկու կողմերն ալ բարեացակամութեամբ յանձնառութիւնը յարգելէ վերջ, այս ջուրերէն պիտի օգտուին» :

Հարցապնդումին հեղինակը չեշտեց որ Արաքսի շրջանի հողերը Եգիպտոսի հողերուն չափ բերրի են բայց ջուրի չգոյութեան պատճառաւ, բաղձալի արդիւնքը չեն տար :

Նոյնպէս յայտնեց թէ Սովիէթները երբեմն «ամբարտակը կը մաքրենք» ըսելով, կը բանան թումբերը եւ Իյտիրի (Իգտիր) դաշտը ողողելով բերքը կը փճացնեն :

# Ութ լեհական ընկերակցութիւններ կը լուծուին

«ՄԻ՛ ԽԱՌՆՈՒԻՔ ՄԵՐ ՆԵՐՔԻՆ ԳՈՐԾԵՐՈՒՆ» — ՑԻՍՈՒՆ ԿԱՐԵՒՈՐ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ԱՐՏԱՔՍՈՒՄՆԵՐ .— ԼԻՈՆԻ ԼԵՀԱԿԱՆ ԴԵՐՀԻՒՊԱՏՈՍԸ ԿԸ ՄԵՐԺԷ ԻՐ ԵՐԿԻՐԸ ՎԵՐԱԴԱՌՆԱԼ

Ինչպէս հաղորդած էինք երէկ, Ապահովութեան տեսչութիւնը 50 Լեհեր ձերբակալեց Եչ . առտու կանուխ, Փարիզի եւ գաւառի մէջ :

Երէկուան թերթերէն կը քաղենք հետեւեալ մանրամասնութիւնները այս ձերբակալութեանց մասին, որոնք մեծ իրարանցում պատճառած են .

Ձերբակալութիւններէն վերջ քառասուն կալանաւորներ անմիջապէս արտաքսուեցան : Միեւնոյն ատեն լուծուեցան լեհական ութ կազմակերպութիւններ, այն ամբաստանութեամբ թէ կապեր ունին համայնավարական գործունէութեան հետ : Լուծման հրամանագիրը երէկ հրատարակուած պիտի ըլլար պաշտօնաթերթին մէջ :

Ահաւասիկ այդ կազմակերպութիւնները .—

1.— Լեհական Ազգ . խորհուրդ .— 2 . Հայրենիքի օգնութեան մարմին .— 3 . Լեհ կիներու Միութիւն .— 4 . Լեհ Երիտ . Միութիւն (Կրունվալտ) .— 5 . Ընկերակցութիւն լեհ բանուորներու (T. U. R .)— 6 . Միութիւն դիմադրական ճակատի նախկին ռազմիկներու (Զպիւրօ) .— 7 . Ընկերակցութիւն Անկար ռազմիկներու .— 8 . Միութիւն լեհ ուսուցիչներու :

Այս բոլոր կազմակերպութեանց կեդրոնները կը գտնուին Փարիզի մէջ, ուր անմիջապէս խուզարկութիւններ կատարուեցան :

Ձերբակալութիւնները եւ խուզարկութիւնները տեղի ունեցան արտակարգ արագութեամբ : Եչ . առտու ժամը 6ին աւելի քան երեսուն ինքնաշարժներ ճամբայ ելան Ապահովութեան պաշտօնատունէն եւ ոստիկանութեան վերատեսչութենէն, դէպի զանազան թաղեր եւ մանաւորաբար Սէն - Փոլ, ուր կը գտնուի լեհական Ազգ . խորհուրդը : Կառքերը գացին նաեւ արուարձանները, մինչեւ Միւռօ (Սէն է Ուազ) : Իւրաքանչիւր ինքնաշարժ Ապահովութեան Տեսչութիւնը կը փոխադրէր մէկ երկու Լեհեր, այն կասկածով թէ խառնուած են Ֆրանսայի ներքին քաղաքականութեան : Ապահովութեան Տեսչութիւնը թղթածրարներ կազմած էր իւրաքանչիւրին համար, այնպէս որ գործողութիւնները կատարուեցան բացառիկ արագութեամբ : Իւրաքանչիւր կալանաւոր կը հարցաքննուէր մասնաւոր ուշադրութեամբ : Խիստ հսկողութեան տակ առնուած էր Ապահովութեան պաշտօնատունը :

Կէս օրէն վերջ, քառասուն կալանաւորներ սահմանագլուխ առաջնորդուած էին արդէն :

Պ . Պերթօ, Ապահովութեան Տեսչութեան տնօրէնը յայտարարեց թէ ձերբակալուած Լեհերը «չարաչար գործածած են Ֆրանսայի հիւրընկալութիւնը եւ ներողամտութիւնը, խառնուելով ներքին քաղաքականութեան » :

Կալանաւորներուն մէջ կը գտնուին լեհական մամուլի գործակալութեան մէկ թղթակիցը, դեսպանատան մէկ պաշտօնեան որ կը զբաղէր մշակոյթի գործերով, Շոփէնի յանձնախումբին լեհական պատուիրակը : Ապահովութեան Տեսչութիւնը «ծայրայեղ» ձախակողմեան կը նկատէ արտաքսուած Լեհերը : Կալանաւորներէն մէկը, Տիկին Տիպրովսկի, մամուլի գործակալութեան տնօրէնին կինը, տղաբերքի մէջ ըլլալով, արտաքսումը յետաձգուեցաւ :

Ոստիկանական տեղեկագրին համաձայն, թէ այս անգամ եւ թէ քանի մը շաբաթ առաջ արտաքսուած Լեհերը մեծ մասով համայնավարական անդամատետր ունէին :

Ֆրանսայի Լեհերուն թիւը կը հաշուեն մօտ 400.000 հոգի : Շատեր հաստատուած են հիւսիսային շրջաններուն մէջ, իբրեւ հանքագործ :

Մինչ այս գործողութիւնները կը կատարուէին, Լիոնի լեհական փոխ - հիւպատոսը, Պոտան Խաթինսկի, Ֆրանսայի պաշտպանութիւնը խնդրեց, յայտարարելով թէ իր կառավարութենէն հրաման ստացած է Վարշաւա վերադառնալու, բայց չուզեր երթալ : «Պատասխանեցի թէ չեմ ուզեր վերադառնալ . ուստի կը խնդրեմ ֆրանսական կառավարութենէն ապաստան շնորհել ինծի» : Կառավարութիւնը անմիջապէս հաւանութիւն յայտնեց :

★Վերջին տեղեկութեանց համաձայն, հետապնդումները կը շարունակուին : Պիտի արտաք -

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ . էջ)

# ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐ

## (ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԵՒ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՀԱՅ ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԻՒՆԸ)

Բ.

1930 Ապրիլ 27ին մեռաւ Երուսաղէմի վերջին ազգընտիր Պատրիարքը՝ Եղիշէ արքեպ. Դուրեան, եւ 1931ին եկաւ իր աթոռը գրաւելու Եգիպտոսի նախկին Թեմակալը՝ Թորգոմ արքեպ. Գուշակեան :

Այս վերջինը գործեց իր հանրային կեանքի ծանրագոյն սխալներէն մէկը՝ յօժարելով Պատրիարք ընտրուիլ բացառաբար Երուսաղէմի վանքի փոքրաթիւ միաբաններուն քուէով :

Առաջին անգամն էր, որ ազգը այսքան ցուցական կերպով կը զրկուէր իր նուիրական իրաւունքէն :

Իր ատենին մենք բողոքեցինք հայ ժողովուրդի իրաւունքներու այս վրդովիչ ոտնահարումին դէմ, սակայն մեր բողոքը մնաց ձայն բարբառոյ յանապատի ...

Թորգոմ արքեպ. Գուշակեանի ընտրութիւնը վտանգաւոր նախընթաց մը ստեղծեց եւ իրմէ ետք նոյն ձեւով կատարուեցաւ ընտրութիւնը նաեւ իր յաջորդներուն՝ Մեսրոպ եւ Կիւրեղ Պատրիարքներուն :

Իրաւական նոր ազդակ մը եկաւ լեցնելու այն պարապը, որ ստեղծուած էր Ազգային Երեսփ. ժողովին փոխիացումով :

Վանքը գտնուելով բրիտանական իշխանութեան տակ՝ Պատրիարքներու ընտրութեան մէջ նոր կարգ մը հաստատուեցաւ. ընտրութիւնը կը կատարէին միաբանները՝ Անգլիոյ Թագաւորին վերապահելով ընտրութեան վաւերացումը եւ Պատրիարքին հաստատումը իր պաշտօնին մէջ :

Այս հիմունքով բարեփոխուեցաւ Միաբանութեան ուխտին կանոնագիրը եւ վաւերացուեցաւ անգլիական (հոգատար) կառավարութեան կողմէ :

Այդ կանոնագրի 20 – 30րդ յօդուածներուն համաձայն, Պատրիարքի մահուան պարագային միաբանութիւնը իր մէջէն տեղապահ մը կ՚ընտրէ՝ անոր հաստատումը վերապահելով հոգատար կառավարութեան :

Տեղապահութիւնը կը տեւէ քառասուն օր :

Քառասնօրեայ շրջանը բոլորելէ ետք, տեղապահը նիստի կը հրաւիրէ միաբանական ընդհ. ժողովը, որ պատրիարքական ընտրելիներու հընգանուն ցանկ մը կը կազմէ :

Յաջորդ օրը նոյն ժողովը այս ցանկին վրայէն կ՚ընտրէ պատրիարքը :

« Ընտրութեան արդիւնքը.— համաձայն 23րդ յօդուածին,— կը հաղորդուի Սուրբ Էջմիածին՝ Ամենայն Հայոց Կաթողիկոսին, եւ ապա՝ հոգատար կառավարութեան միջոցաւ կը ներկայացուի Լոնտոն՝ Թագաւոր կայսեր հաստատութեան» :

Ազգային սահմանադրութեան տեղը մեզի այս կանոնագիրը ժառանգութիւն ձգելով՝ 1939 Փետր. 11ին մեռաւ Թորգոմ Պատրիարք Գուշակեան :

Ընտրութեան այս եղանակը այլեւս աւանդութիւն դարձաւ եւ Թորգոմ Պատրիարքի մահէն ետք, 1939էն այս կողմ, կիրառուեցաւ նաեւ իր երկու յաջորդներուն՝ Մեսրոպ եւ Կիւրեղ Պատրիարքներուն ընտրութեան նկատմամբ :

Ազգին իրաւունքներուն մասին չխորհեցան ոչ միայն Թորգոմ արքեպ. Գուշակեան, այլեւ չխորհեցան իր զոյգ յաջորդները :

Չխորհեցաւ անգամ Մեսրոպ արքեպ. Նշանեան, որու մասին «Զարթօնք»ի յօդուածագիրը մեզի հետեւեալ վկայութիւնը կուտայ .

— « Վերջրնթեր պատրիարքը, Ամեն. Տ. Մեսրոպ Ս. Արք. Նշանեան, մեզի ցոյց տուած էր, 1944ին, այն արձանագրութիւնը, զոր թողած էր այն ատեն, 1931ին, երբ ինք էր եղած բանագնացը Բրիտանական իշխանութեանց մօտ յԵրուսաղէմ, ըստ որում վերապահութիւն կը դրուէր վերահաստատելու համար Հայ Ազգը իր հակակշիռի պաշտօնական իրաւունքներուն մէջ » :

Տարաբախտաբար, այս ճիգը չկատարուեցաւ հետագային. ինքն իսկ բանագնացը, որ յաջողած էր «վերապահութիւն» դնել՝ հետագային հայ ժողովուրդի իրաւունքները վերահաստատելու համար, նախընտրեց այդ «վերապահութեան» վրայէն անցնիլ եւ պատրիարքական աթոռին տիրանալ բացառաբար քանի մը միաբաններու քուէով :

Նոյն ընթացքին հետեւեցաւ նաեւ վերջին Պատրիարքը՝ Կիւրեղ արքեպ. Իսրայէլեան. ան նոյնպէս «Ազգ»ը տեսաւ 25 միաբանակիցներէն 14ի քուէներուն մէջ, որ ստացած էր իր ընտրութեան ատեն...

Տարօրինակ է մանաւանդ այս վերջին Պատրիարքին ընթացքը : Իր պաշտօնավարութեան շրջանին պատահեցաւ քաղաքական մեծակշիռ դէպք մը, որ անկարող էր չանդրադառնալ Պատրիարքութեան իրաւական դիրքին վրայ,— 1948 Մայիս 15ին վերջ գտաւ բրիտանական հոգատարութիւնը Պաղեստինի վրայ :

Տակաւին 1948 Մայիս 15ը չեկած՝ Պատրիարքը դիտէր այս մասին :

Սակայն ոչ մինչեւ 1948 Մայիս 15ը եւ ոչ ալ այդ Թուականէն ետքը, մինչեւ իր մահը, ոչ մէկ քայլ — պատրիարքարանի իրաւավիճակին վերաքննութեան նկատմամբ ...

Այսօր յայտնի է այլեւս այն կացութիւնը, որ ստեղծուած է Երուսաղէմի մէջ :

Հետեւեալ կարեւորագոյն պարագաները համազգային քննութեան խնդիր կը դարձնեն Երուսաղէմի Հայ պատրիարքութեան ապագային հարցը.

Ա.— 1948 Մայիս 15էն ասդին վերջ գտած է բրիտանական հոգատարութիւնը Պաղեստինի վրայ :

Բ.— Այս հոգատարութեան վերացումով՝ ինքնին կորսնցուցած է իր իրաւական ուժը Միաբանութեան ուխտին այն կանոնագիրը, որ մշակուած էր համախորհուրդ նոյն հոգատարութեան հետ, ապա վաւերացուած՝ բրիտանական կառավարութեան կողմէ, եւ ուր ճշդուած էին պատրիարքական ընտրութեան կանոնները :

Գ.— Բրիտանական հոգատարութիւնը վերնալով՝ անոր բաց ձգած տեղը տակաւին գրաւուած չէ միջազգայնօրէն ճանչցուած որեւէ ուժի կողմէ :

Դ.— Այն օրը, երբ միջազգայնօրէն ճանչցուած այս ուժը գայ գրաւելու բրիտանական հոգատարութեան թափուր ձգած տեղը, նոյն օրը այս նոր իշխանութիւնը՝ իր հովանին տարածելով նաեւ հայ պատրիարքութեան վրայ՝ պիտի ուզէ գիտնալ «միանգամայն Հայոց ազգին սեպհական» պատրիարքութեան ապագային մասին՝ Հայոց ազգին կարծիքը :

Այս կարծիքն է ահա, որ այսօր, քանի տակաւին ուշ չէ, լայնօրէն արծարծել ու մշակել պէտք է՝ վաղը զայն գործադրութեան դնելու համար :

Կարեւորագոյնը բոլոր կարծիքներու, բոլոր առաջարկներու եւ հարցերու մէջ այն է, ինչ որ այնքան գեղեցիկ կերպով ճշդուած է ազգային սահմանադրութեան մէջ.— վերստին ազգը իրաւատէր դարձնել այն հաստատութեան, որ «միանգամայն Հայոց ազգին սեպհական է» :

Ի՞նչպէս հասնիլ այս նպատակին, երբ մենք չունինք այլեւս այն բարձրագոյն ատեանը — Ազգային երեսփոխանական ժողով — որ երէկ այնքան հեղինակաւորապէս կը ներկայացնէր ազգը Պոլսոյ մէջ :

(ՑՈՒՍԱԲԵՐ)

## ՕՐՈՒԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՀԵՏ

# Արդի Լեհաստանը

Ամերիկեան թերթի մը թղթակիցը տեսութիւններ կը հրատարակէ նոր Լեհաստանի քաղաքական, տնտեսական եւ ընկերային կացութեան մասին :

Կ՚ամփոփեմ հիմնական մասերը :

Վերջին երեք տարիներու ընթացքին Լեհաստան բոլորովին թօթափեց արեւմտեան ժողովրդապետութիւնը : Հոն հիմա կը տիրապետէ բոլշեւիկեան դիկտատուրան : Ժողովուրդը նուիրուած է վերաշինական աշխատանքի :

Տնտեսապէս, ամէնէն կենդանի տպաւորութիւնը զոր մարդ կը կրէ, արդիական գեղեցիկ շէնքերն են որ կը բարձրանան Վարշաւայի աւերակներուն մէջէն, ինչպէս եւ լեհ այրերու եւ կիներու կենսունակութիւնը, երբ աճապարանքով կ՚անցնին ձիւնոտ փողոցներուն մէջէն : Թէեւ շատ վայելուչ հագուած չեն, սակայն բաւական լաւ պատսպարուած են ցուրտին դէմ :

Քաղաքական տեսակէտով՝ Լեհաստան — ամէնէն մեծը եւ ամէնէն բազմամարդն է համայնավար երկիրներուն — չափուած – ձեւուած է բոլշեւիկ Ռուսիոյ տիպարին վրայ :

Իսկ արեւմտեան տեսակի խորհրդարանական ձեւերը, որոնք պահուեցան մինչեւ 1946 – 1947, հիմա փոխուած են :

Արեւմտեան թերթերու թղթակիցներ առ այժմ կրնան լուրեր ղրկել առանց գրաքննութեան : Սակայն վիզէները որ առաջ մեքենաբար կը տրուէին, դարձան առանձնաշնորհ մը վերջին վեց ամիսներու ընթացքին : Անցագիր կարելի է ստանալ միայն Քաղաք. Բիւրոյին միջոցաւ :

Վարշաւայի օտար դիւանագէտները եւ արեւմտեան թերթերու թղթակիցները սահմանափակուած չեն մայրաքաղաքին մէջ, կրնան առանց արտօնութեան ճամբորդել երկրին մէջ :

Սակայն գաղտնի ոստիկանութիւնը միշտ կը հետեւի օտար լրաբերներու, դիւանագէտներու եւ արեւմտեան քաղաքացիներու շարժումներուն : Երկու ամիս առաջ համայնավար կառավարութիւնը գաղտնի եւ երկդիմի օրէնք մը հրատարակեց, որուն համաձայն թղթակից մը կրնար բանտարկուիլ իբրեւ լրտես, նոյնիսկ եթէ շատ սովորական տեղեկութիւն մը ուզէր, օրինակ, իմանալու համար արհեստակցական միութեան մը անդամներու թիւը :

Շթեթինի Ֆրանսական հիւպատոսարանի կըցորդ Անտուէ Ռոպինոյի ձերբակալութիւնը ցոյց կուտայ թէ ինչու սրտադողի մատնուած են Արեւմտեան թղթակիցները եւ դիւանագէտները : Պ. Ռոպինօ խորհրդաւոր կերպով ձերբակալուեցաւ երբ կ՚ուզէր օդանաւ մտնել եւ Փարիզ մեկնիլ : Մինչեւ իսկ երկու օր չկրցաւ լուր տալ իր գերդասին :

Լեհաստանի բոլշեւիկացումը այնքան յառաջ գացած է որ, այն պետական վարիչները, մէջն ըլլալով համայնավարները — որոնք կը պնդէին թէ Լեհաստան թանկագին միջոց մը գտած է համադրելու համար Արեւմտ. ժողովրդապետութիւնը Արեւելեան ընկերվարութեան հետ, պատիժի կ՚ենթարկուէին այսօր, եթէ չընդունէին իրենց մտածման սխալը : Օրինակ՝ Վլատիսլաւ Կոմուլքան, նախկին փոխ – վարչապետը որ արտաքսուեցաւ կուսակցութենէն : Վերջին պահուն «խոստովանեցաւ» իր սխալը, սակայն ուշ ըրած ըլլալով իր յայտարարութիւնը, պատժուեցաւ իբրեւ կեղծաւոր :

Նախագահ Պոլեսլաւ Պիրուտ որ թէեւ ինք – զինք ոչ – կուսակցական կը դաւանէր, սակայն վերջին տարին հրաւիրուեցաւ համայնավարներու կողմէ, օգնել ուղղելու մոլորեալները : Եւ տառապէս գործադրեց նոր հրահանգները :

Անկէ ի վեր գիւղացիական կուսակցութիւնը հաշուեյարդարի ենթարկուեցաւ, ընկերվարականները լուծուեցան համայնավարութեան մէջ : Համայնավարները հիմա բացէ ի բաց կը պնդեն թէ պրոլետարիատին դէմ ամէն ընդդիմութիւն պէտք է անխնայ հաշուեյարդարի ենթարկուի :

Առաջին օրերուն Լեհաստանի մէջ, Մոսկուայէն քաջալերուած՝ Մոսկուայի հաւատարիմ Լեհեր իրենց յայտարարութեանց մէջ կը խոստանային թէ անհատական ձեռնարկները պիտի երաշխաւորուէին : Այսօր «խառն տնտեսութեան» ջատագովներ կը հալածուին, կը ծաղրուին, մինչեւ անգամ կը բանտարկուին : Վեցամեայ նոր ծրագիրը, որ 1950ին կը սկսի, պիտի սեղմէ անհատական դրամատիրութեան վերջին տարրերը, որոնք տակաւին կը մնան :

Գիւղն ալ հաշուեյարդարի դատապարտուած է, թէեւ դանդաղ : Գիւղացին թէեւ կը վախնայ ապագայէն, բայց կը թուի թէ կ՚ուզէ օգտուիլ պետական սակագին որոշելու քաղաքականութենէն :

Ամէնէն մեծ հարցը սա թէ լեհ գիւղացին պիտի կրնա՞յ դլուխ հանել «երկրագործութեան ընկերվարացումը» առանց այն տնտեսական ցընցումներուն որոնց ենթարկուեցաւ Խ. Միութիւնը : Լեհաստան արդէն ետ մնացած է միւս բոլշեւիկեան երկիրներու հաւաքական տնտեսութեան քաղաքականութենէն (կոլխոզ) : Լեհ վարիչները բաւական մաքառեցան Մոսկուայի հետ, որպէսզի դանդաղօրէն յառաջ տարուի այս գործը : Լեհական քաղաքներու մէջ ուտելիքի առատութիւնը եւ աւելորդին արտածումը անտարակոյս հետեւանք է այն իրողութեան որ տակաւին բուռն միջոցներ ձեռք առնուած չեն երկրագործութեան մէջ :

Լեհերը նոյն ճարպիկութեամբ շարժեցան ուրիշ կարեւոր հարցի մը.— կաթոլիկ եկեղեցւոյ հետ եղած յարաբերութեանց մէջ :

Կառավարութիւնը կը ջանայ կղերին ազդեցութիւն տկարացնել անզգալաբար, խուսափելով բուռն տնօրինութիւններէ :

Իրազեկներու կարծիքով, ի վերջոյ կառավարութիւնը պիտի շահի պայքարը, որովհետեւ երիտասարդութեան համայնավարացումը հսկայաքայլ կը յառաջդիմէ : Հետզհետէ կղերը դաստիարկութեան ասպարէզէն քշելով, կառավարութիւնը կը ծրագրէ Եկեղեցիին ազդեցութիւնը նուազագոյնին իջեցնել : Արեւմտեան քաղաքագէտ մը նկատի ունենալով այս յառաջդիմութիւնը եւ կառավարութեան խիստ հսկողութիւնը, ամէն ասպարէզի մէջ, կը կարծէ թէ տասնեակ մը տարիէն մոլեռանդ հետեւորդներ պիտի ունենայ կուսակցութիւնը :

Լեհաստանի 23 միլիոն բնակիչներուն մէջ կան չորս միլիոնը ճարտարարուեստական բանուորներ, որոնք առանձնաշնորհներ կը վայելեն, ինչպէս ձրի բժշկութիւն, հանգստեան թոշակ, մասնաւոր տոմսակ որոնք առաւելութիւն կուտան միսի, հագուստի, եւայլն գնումներու մէջ : Ժողովրդական ճաշ 70 զլոտիի (20 սէնթի) : Անշուշտ զրկուած մնալով արեւմտեան ժողովուրդներու վայելած ազատութենէն : Իրազեկներ կը պնդեն թէ ժողովուրդին 85 առ հարիւրը համայնավարութեան դէմ պիտի քուէարկէ, եթէ ազատ ընտրութիւն կատարուի :

Գաղտնի ոստիկանութիւնը ամէն միջոց ձեռք առած է, որեւէ խլրտում խափանելու համար :

Ինչպէս Չեխոսլովաքիոյ, Լեհաստանի մէջ ալ կացութիւնը կարելի է ամփոփել հետեւեալ նշանախօսքին մէջ.— «Աւելի ուտելիք, նուազ ազատութիւն » :

Թ.Ա.Թ.

